նէին յորդ մարմնոյ նը̃ կրծաբախ հառաչ-մամբ և թախծեալ ոգւով։

Այլ իսկոյն իջեալ յեզր ծովուն՝ տեսանէր նաւ մի ձկնորսաց, զոր կազմէին զուռկանսն. և ոչ ծանուցեալ նաւավարացն զերանելին մր̃ առնացի կերպարանացն՝ ասէն ցնա. Եկ ով երիտասարդ օգնական լեր մերոց աշխատու-թեանցս, զի հաղորդ արասցուք զքեզ որսոյ ձկանցն։ Այլ նորա մտեալ 'ի նաւն՝ զձկնոր-սացն ձմլեցուցանէր զաչսն և զոգիս հեզա-կան պարկեշտութբ̃, և քաղցրաբարբառ ածա-խօս բանիւքն։ Այլ իբրև արկին զուռկանսն 'ի ծովն, իսկոյն թափեցան 'ի նմ̃ բազմութի̃ յոյժ մեծամեծ ձկանց. զոր հազիւ և մեծ աշխատութբ̃ յեզր ծովուն արտաքս ձգէին։ Այլ 'ի հանել նց̃ զձկունսն, տեսանէին 'ի մէջ ուռկանացն և մեռեալ մարմինս՝ պատառ-պատառ կոտորեալ. և խռովեալ յայնմ տես-լենէ՝ ահիւ և տրտմութբ̃ ըմբռնեալք լի-նէին. ապա 'ի բաց թօթափեալ զմարմինս՝ թողուին 'ի ցամաքի անդ. և զուռկանսն ա-ռեալ՝ փութային երթալ յայնկոյս ծովուն, և անտես 'ի մարդկանէ յայլ տեղի գնալ յորս. և իբրև աղաչէին զմեծն որսակից լի-նել նց̃, նա ոչ հաւանեալ նց̃՝ 'ի բաց գնայր. իսկ նաւավարքն հաց և ձուկն տային նմ̃ փո-խանակ վարձուց աշխատութեն. և ինքեանք գնացին։

Յայնժամ երանելին դամնա, որ զխնդեալսն և զնորին ընկերակցացն զյեղանակ մարտին և զվախճանին յառաջագոյն իմացեալ էր, և-

եկեալ 'ի տեղին՝ յորում անկեալ կային մար-
մինք սրբցն եղեալք յուռականաց անտի, տեղ
տեղ չոր չորջէր, և ստուգութի զիւրաքան-
չիւր ոք 'ի նոցանէ զնշեր. որպ և նկարագիր
դիմաց նց հաւաստի ցուցանէր զկերպարանս
նց. տապա գիրկս արկեալ ողջունէր՝ անյագա-
բար համբուրելով զնս, և արտօսր ոչ սակաւ
հեղոյր 'ի վր նց։

Իսկ մինչդեռ դառնացեալ ոգւով փարէր ըղ-
մարմնովք երանելեաց 'ի ծովեզերին, ետես
նաւ մի եկաւորեալ 'ի վր ծովուն. և նաւա-
վարացն իջուցեալ զառագաստն՝ թևօք կմ
թիօք հանդարտաբար մերձենային առ ափն
ծովուն։ Որդ յառաջ մատուցեալ ոք կոյսն
դոմնա՝ զնաւապետն ողջունէր, որպս պարտ
էր. և ցուցանէր զձկունսն՝ զոր ունէր, որպ
թէ դիւրագին վաճառել. մինչև իմացի՝ և
թէ քրիստոնեայ է ինքն և իւրքն, որպ կար-
ծէր. և նաւապետն զնր զքրիստոնէութիւն
ստուգել կամեցեալ՝ երդմնեցուցանէր զնա
յանուն յնի՝ ասել, թէ քանոյ վաճառէ։
Յայնժամ ազնուական կոյսն ծանեաւ զբա-
րեպաշտութի առնն. և կոչեալ զնա արտա-
քոյ 'ի նաւէն՝ ցուցանէր նմա զմարմինս սրբց՝
կցորդ առնել զնա կամելով նոցունց գեղե-
ցիկ պաշտամանցն. և պատմէր նմա մի ըստ
միոջէ ստուգութի զամ անցս չարչարանաց
վկայիցն։

Որդ իբրև լուաւ զայս ամ նաւապետն, ան-
կեալ առաջի ոտ վկայիցն՝ համբուրէր զոտս
ածակիր մարմինս նց. հանէր վաղվաղակի 'ի
նաւէ

նաւէ անտի կտաւս նորա և հանդերձս սպի-տակս , և իւղս անուշունս և խունկս ազ-նիւս ․ և դոմնա լուանայր յառաջագոյն մա-քուր ջրով , մանաւանդ արտասուօք զմար-մինս երանելեացն ․ և օծեալ և խնկեալ զնս հանդերձ նաւապետաւն , և նմ զգուշութբ պատուտակալեալ , բարձեալ տարան զնոսա մերձ առ պարիսպ քաղաքին՝ հուպ առ ձորա-կին 'ի դրունսն՝ որ հանէր 'ի ծովն համատա-րած ․ յորում տեղւոջ սբքն այն դորոթէո-սեանք և ինդոսեանք ընկալան զվճիռ մա-հու ․ և անդ պատրաստեցին գերեզման , և թաղեցին զնս զգուշութբ ։

Եւ դոմնա 'ի նմին տեղւոջ խոստանայր կեալ մինչև 'ի կէտ կոչման իւրոյ , և ոչ մեկնիլ 'ի նշ գերեզմանաց նահատակացն քնի ։ Եւ այնուհետև անդ կեայր համբերութբ բազ-մաւ , աղօթիւք և անուշահոտ խնկօք և ան-շէջ լապտերօք միշտ և հանապազորդ զպա-տիւ յիշատակի նց կատարելով ․ որում ձեռն-տու լինէր և բարեպաշտ նաւապետն ընչիւք բաւականօք առ այնպիսի պէտս ։

Արդ քանզի ոչ էր պարտ և պատշաճ ա-րեգակնափայլ և լուսաճաճանչ ճառագայ-թիցն ծածկիլ 'ի յերկրի , ևս առաւել ոչ ա-ռանց կատարման մնալ ածային ցանկութե կուսին առ վկայական հանդէս , անտուստ ուրեմն 'ի յայտ եկեալ զրոյցք իրին հասին յականջս չարիմացին մաքսիմիանոսի ․ որոյ իմացեալ զանձկալի տրփանս նր առ նահա-տակուն , և թէ սորին վս առ մարմինս սբցն դե-

դեգերէր , ծափ̀ ծափի հարեալ ծիծաղէր , և ասէր . շնորհեցից նմ՝ զբաղձալին իւր կատարած , և հաւասարակից արարից զնա նոցին չարչարանացն , արձակելով զնա 'ի սնոտի յոյսն իւրեանց՝ զոր ունին :

Զայս ասացեալ՝ վաղվաղակի զդահիճսն առաքեաց . որք եկեալ հասին 'ի տեղին՝ յորում կայր նա . և տեսին , զի երանելին արտասուալից պաղատանօք յաղօթս կայր 'ի սրտի իւրում՝ շրթանց շարժելով միայն . և մերկացուցեալ զսուսերս իւրեանց՝ սպառնային ծայրաքաղ առնել զն̄մ անդամս ն̄ր . զի թերևս զարհուրեսցի և 'ի բաց կացցէ 'ի ք̄նէ : Իսկ երանելի կոյսն ոչինչ փոյթ առնէր զսպառնալեաց ն̄ց , և ոչ զանգիտեալ յերկիւղէ մահու՝ հանդարտութ̄բ և ցնծութ̄բ կայր յաղօթս . մինչև ասացէ զամէնն՝ կնքեաց զինքն նշանաւ ն̄ր խաչին , և խոնարհեցոյց զպարանոցն առաջի դահճաց : Եւ այնպէս հատեալ եղև սրով գլուխ գերապայծառ և մաքուր ն̄ր կուսին դոմնայի , յամսեանն դեկտեմբերի՝ որ օր քսան և չորս էր ամսոյն . ( որ է ի̄ը այլոց օր կատարման երկուց բիւրուցն ) :

Յետ վկայութեն դոմնայի ըմբռնեալ լինէր և մեծն անթիմոս (7) ն̄ր քահանայապետն բիւթանացւոց նահանգին , որ զբազումս լուսաւոր վկայութ̄բն իւրով լուսաւորեաց , և ընծայեաց բանաւոր պատարագ երկնաւոր և քաջ հովուին . և ի̄ը ա̄մ հանդէս արիական համբերութ̄բ անցեալ՝ ընկալաւ զվճիռ մա-

հու

հաւ սրով 'ի նմին 'ի Մաքսիմիանոսէ . զորոյ զնոյն հարցափորձութիւն և զհանդէս տանջանացն՝ յիւրում մանրամասնաբար պատմութեան է տեսանել :

Արդ ոչ միայն քսան հազարօքս այսուքիւք (ասէ վկայաբանն.) , որ 'ի միասին 'ի միում փայլեցան ժամանակի եղեն ողջակէզք ընդունելի և պատարագ անուշահոտ բոլորիցն ա̃յ , այլ որովք անթիւք 'ի սմա երևեցան վկայք՝ քաղաքս այս մեծ Նիկոմիդացւոց զարդարեցեալ լինէր իբրև զերկինս աստեղօք պայծառացեալ : Այլ 'ի կարգի նշուլաւէտ աստեղացս յականէ յանուանէ փայլեցին նահատակութ̃բ յաւուրս կատարման երկուց բիւրուցս՝ նախաճառեալ վկայք նշանաւորք . սքանչելին Գղերիկոս , այն է Գլիկերիոս՝ աւագ քահանայ համաշխարհական եկեղեցւոյն Նիկոմիդացւոց , և Թէոմնաս սարկաւագապետ , և Թէոփիլոս սարկաւագ . և երանելին Դորոթէոս նախարար , և Մարդոնիոս , և Պետրոս և Միգդոնիոս ապետաք և իշխանք , և Զենոն զօրական . և երջանիկն Ինդոս ներքինի , որ և Ինդէս . և երեքին միշտ կուսանք ծ̃այինք , Ագապիէ , Թէոփիլէ կամ Թէոփիլա , և Դոմնա՝ գլուխ և աւարտ մարտիրոսացս և վկայուհեաց :

Այլ եղև կատարումն սր̃ց վկայիցս առ հասարակ 'ի Թագաւորութեան Մաքսիմիանոսի և Դիոկղետիանոսի , յամի տ̃ն իբր 300 . զոր այսպէս նշանակէ ճառընտիրն , * զկնի ծագման կենարարին մերոյ յամի երկերիւրերորդի

գի քառանկերորդի (իմա վաթսներորդի) ու-
թներորդի ‖ ։ (վրիպակաւ գրեալ մի՛ը, փո-
խանակ գրելոյ մկը), հաշուելով 'ի չարչա-
րանաց տն ։ յոր յաւելեալ և զամս երեսուն
և երեք, լինի ամ տն 301, սկզբնաւորեալ,
կմ 300, աւարտեալ ։ ը որում զօր կատար-
մանն դնեն ամենեքին մերձ 'ի տօնն՝ կամ 'ի
տօնի հրաշափառ ծննդեան և մկրտութեան
փրկչին (8) ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

(1) Բաղ միաբանին Ճառընտիրն մեր և մետափրա-
տեաս 'ի վկայաբանութեանս սորին՝ ը սկզբնաւորութե, ը
ընթացից, և ը կատարածին, համառակօրէն բառ առ
բառ, և ուրեք ուրեք իմաստ առ իմաստ ։ զի ուրեք մին
համառօտէ զատենախօսութիւնս, և միւսն ընդարձակէ ։ յոր-
մէ յայտ է թէ աղբիւր երկոցուն է մի, եթէ օրինակն
մեր չիցէ աղբիւր մետափրաստեսին ։ Թո՛ղ զախալանս
գրչաց 'ի մին և 'ի միւսն, մինչև անխտիր ուղղագրել
զմխմեանս ։ ոչ և զտարբերութին հայ և լատին թարգ-
մանչին ։ զի թէպէտև բնագիրք երկոցունց են այլևայլ,
բայց ուր նոյն բան կայ յերկոսին՝ տակաւին այլևայլ է
ոճ թարգմանութե ։ զոր միշտ պանծալի տեսաք 'ի հայ-
ումս ։ Այլ և մեք համառակօրէն անայլայլելի պահեցաք
զչորայլութ Ճառընտրին՝ զգեղեցիկ աշխատասիրութն
նախնեաց մերոց ։ միայն ուրեք ուրեք զխրթնութիւն
պարզելով, և զախալանս գրչութ մաքրելով ։ Յայսմա-
ւուրք խուրաքանչիւր ազգաց են քաղուած նոյն վկայա-
բանութե, է՛ զի առաւել մետափրաստեան օրինակի հե-
տևելով, և է՛ զի այլուստ ինչ ինչ պատմաբանելով ։ որ
լինի երբեմն հետևողութ ընտիր ընթերցուածոյ, և
երբեմն խոտորնակ հետք սխալ իմացուածոյ ։
Մետափրաստեան ոճոյ օրինակ լիցին այս բանք ։ զի
'ի սկզբան՝ ուր Ճառընտիրն յայտնէ զմիճակ եկեղեցւոյ
ծաղկեալ ըստ և իմաստուն արամբք, յորոց մի էր և կիւր-

ղոս

գեան 'ի դեկտ. 25. և մն ածայայտնութեան 'ի յունվարի 6. ըստ որում և ոսկեբերանն միով դարու զկնի ասէ, թէ նորոգ ընկալաք զայս սովորութիւն կրկին տօնից: Ցայս հայեցեալ և մեր եկեղ՝ զերկուց բիւրուց օրն ձգէ 'ի յունվարի 4. և միանգամայն ասէ լինել օր ծննդեան:

Իսկ մետափրաստէս 'ի միոյ կողմանէ հայեցեալ 'ի սովորութիւն ժամանակի իւրոյ՝ պարզապէս յաւուր ծննդեան Քի ասէ զկատարումն սոցա, առանց յիշելոյ զպայմանութիւն. և 'ի միւս կողմանէ զօր տօնի նց միով աւուրբ զկնի ծնդ., դնելով 'ի վախճանի այսպէս. * որոց յիշատակն ,, կատարի միով աւուրբ զկնի ծննդեանն Քի, յառաջ ,, քան զտօն անմեղ մանկանց. զի ոպ նք սրով, նոյնպէս ,, և սոքա հրով պատարագեցան այ, որ զգեցաւ ,, զմարմին ||: և ըստ այսմ սուրբս գրէ զվկայաբանութիւն երկուց բիւրուցս, և որոց է նն, 'ի 26. դեկտ: Եւ սակայն յայսմաւուրք և ժամագիրք յունաց դնեն զյիշատակ նց 'ի դեկտ. 28: Եւ ըստ երկաքանչիւր իսկ դրութեանց չփոթի օր կատարման երկուց բիւրուց, և ինդոսի և դոմնայի և որոց է նն. ուր յայտ է 'ի պատմութենէն, թէ ոչ 'ի նմին աւուր եղև կատարումն ամենեցուն սցա. այլ 'ի զանազան աւուրս:

Առ այս՝ յարմարութեամբ ինն. Լ. եդեալ է զկատարումն գլիկերիոսի քահանայի 'ի դեկտ. 21. զեւթիմիոսի (որ է ըստ մեզ անթիմոս) 'ի դեկտ. 24. զբիւրուցն 'ի դեկտ. 25. և զինդոսի և զդոմնայի 'ի դեկտ. 28: Իսկ Հ. եդեալ է զյիշատակ երկուց բիւրուց 'ի դեկտ. 24. իբրև յաւուր ծննդեան Քի, փոխ ասելոյ՝ 'ի նախատօնակի. և զինդոսի և զդոմնայի 'ի դեկտ. 29. ոպ և զտօն նոցա միաբան կատարեմք 'ի նմին միջոցի: Արդ յայսմ ամէ զինչ և կամի ոք՝ մակաբերեսցէ, միայն թէ առանց հկռկուն, յիշելով զառաքելականն՝ թէ մի՛ ոք զձեզ զաւանեցուսցէ ամսամտիւք կմ շաբաթուք կմ մասամբք տօնից. զի տն 'ի փառս այ կատարի յերկիւղածաց նորա. և չէ՛ փոյթ մեզ տօնելն մեր զնն քանիւմի աւուրբք յառաջ կամ յետոյ քան զբուն օր կատարման նց, (զի և չէ՛ մարթ գիտել զբազմաց օրն հաւաստի), միայն թէ տօնեսցուք ստուգութբ՝ ոպ արժան է, կթ սրբութբ զնս պատուելով, և նախանձաւոր լինելով վաստակոց նց և պսակաց:



# ԿԱՏԱՐՈՒՄ՛Ն ՍՐԲՈՑ

## Խոստովանողացն՝ Աբրահամու և Խորենայ ։

Հ· դեկտ· 20 ։ Տր ելլ· դեկտ· 8 ։ Մէն եղելէ ։ փոխդեցի · և այլք ։



ԵՐԿՈՔԻ՛Ն ՍՈՔԱ սքանչելի նոյն երիցունք՝ պարծանք հայաստանեայցս եկեղեցւոյ և ամուլք հաւատոյ, էին 'ի համարոյ աշակերտացն սրբոց ղեւոնդեանց քհնյից, և սպասաւորէին նոցա 'ի նեղութեան բանտի՝ որ 'ի նիւշապուհ քաղաքի ապար շհին վրկանայ. և յորժամ տարան զնոսա զղեւոնդեանս 'ի ծածուկ արտաքոյ քաղաքին 'ի նահատակել, դենշապուհ ոստիկան ամբարապետ որոշեաց զաշակերտսն 'ի վկայս, և ետ պահել կապանօք զաբրահամ և զխորէն այլովքն հանդերձ 'ի դղեակի անդ նիւշապհոյ, մինչև լիցի նոցա հրաման յարքունուստ ։

Ապա յետ կատարման նոցա վկայացն՝ յամի տն 454, եղև նոցա հրաման, զի արձակեսցին 'ի կապանաց, և երթիցեն ուր և կամին ։ Յայնժամ երանելի երիցունք խորէն և աբրահամ եկեալ առ ամբարապետն դենշապուհ

պուհ՝ բողոք բարձել ասէին . դու յորժամ
զհոգևոր տեառնն մեր և զվ̃ճպս 'ի նխուշաւ-
հոյ առեր զնացեր , ը̄ որս և մեք կամեցաք
ուղեկից լինել , բռնաբար հրամայեցեր խստա
պահպանութ̃ արգելուլ զմեզ մինչև ցայժմ :
Արդ՝ եթէ տարեալ ուրեք յերկիր օտար և
անդարձ անցուցիք զնա , առնելով բարերա-
րութի՝ պատմեցէք մեզ , երթալ և մեզ և
լինել անդարձ ը̄ նմ . զի մեք անդ կեալ և
վախճանիլ պատրաստ եմք , միայն թէ տե-
սանելոյ զնորա լիցուք արժանի . ապա եթէ
սպանիք զնա վ̃ս անուանն քո , կամեցարուք
և 'ի վերայ մեր տալ զնոյն հրաման . վ̃ս զի
պատուական և մեծարգոյ համարիմք զմահ
այնպիսի քան զա̃մ փառս և զմեծութիս աշխիս :
Իսկ վեհդենշապուհ զարմացեալ ա̃մ բազ-
մութ̃ հրապարակին ը̄ համարձակութիւն
աներկիւղութ̃ արանցն՝ ասէ ցնա . զձանա-
պարհ վ̃ճպաց ձերոց ոչ ոք ցուցանէ ձեզ .
բայց վ̃ս ձեր հարցցուք ցարքայից արքայ . և
մտեալ 'ի ներքս դենշապուհ պատմէր յազ-
կերտի զա̃մ զբանս և զխնդիրս երանելի ե-
րիցանցն : Ասէ թ̃քրն . եթէ 'ի նց̃ վ̃ս վնաս
ինչ ոք յայտ չառնէ , և դատախազ ոք չէ
զհետ , թող երկիր պագցեն արեգական , և
պատուէլ զկրակն յանձն առցեն . և ընկա-
լեալ զպարգևս մեծամեծս 'ի մէնջ՝ արձա-
կեսցին յաշխն իւրեանց . ապա թէ չհաւանես-
ցին յանձն առնուլ զմեր հրաման , պատու-
հաս կրեսցեն խեղութ̃ , և երթեալ յասո-
րեստան՝ մշակութի արասցեն ընդ արքունի



# ԿԱՏԱՐՈՒՄՆ ՍՐԲՈՅ

Խոստովանողացն՝ Աբրահամու և Խորենայ ։

Հ. դեկտ. 20 ։ Տր էէլ. դեկտ. 8 ։ Մէն եղիշէ ։ Փարպեցի. և այլք ։



ԵՐԿՈՔԻՆ ՍՈՔԱ սքանչելի նք. երիցունք՝ պարծանք հայաստանեայցս եկեղեցւոյ և ամուլք հաւատոյ, էին 'ի համարոյ աշակերտացն սրբոց ղևոնդեանց քահանայից, և սպասաւորէին նոցա 'ի նեղութեան բանտի՝ որ 'ի Նիւշապուհ քաղաքի ապարշահրին վրկանայ. և յորժամ տարան զնոսա զղևոնդեանսն 'ի ծածուկ արտաքոյ քաղաքին 'ի նահատակել, դենշապուհ ոստիկան ամբարապետ որոշեաց զաշակերտսն 'ի վկայաց, և ետ պահել կապանօք զաբրահամ և զխորէն այլովքն համդերձ 'ի դղեկի անդ նիւշապհոյ, մինչև լիցի նոցա հրաման յարքունուստ ։

Ապա յետ կատարման նք. վկայացն՝ յամի տն 454, եղև նոցա հրաման, զի արձակեսցին 'ի կապանաց, և երթիցեն ուր և կամին ։ Յայնժամ երանելի երիցունք Խորէն և Աբրահամ եկեալ առ ամբարապետն դենշապուհ

պուհ՞ բողոք բարձեալ առէլն . դու յորժամ
զհոգևոր տեարսն մեր և զվճպս 'ի նխւշաւ-
հոյ առեր գնացեր , է որս և մեք կամեցաք
ուղեկից լինել , բռնաբար հրամայեցեր խափա
պահպանութբ արգելուլ զմեզ մինչև ցայժմ :
Արդ՝ եթէ տարեալ ուրեք յերկիր օտար և
անդարձ անցուցիք զնա , առնելով բարերա-
րութի՝ պատմեցէք մեզ , երթալ և մեզ և
լինել անդարձ է նմ . զի մեք անդ կեալ և
վախճանել պատրաստ եմք , միայն թէ տե-
սանելոյ զնոսա լիցուք արժանի . ապա եթէ
սպանիք զնա վս անուանն քմի , կամեցարուք
և 'ի վերայ մեր տալ զնոյն հրաման . վս զի
պատուհական և մեծարգոյ համարիմք զմահ
այնպիսի քան զմն փառս և զմեծութիւն Տիս :
Իսկ վեհզենշապուհ զարմացեալ ըմն բաղ-
մութբ հրապարակին է համարձակութիւն
աներկիւղութե արանցն՝ ասէ ցնա . զձանա-
պարհ վճպաց ձերոց ոչ ոք ցուցանէ ձեզ .
բայց վս ձեր հարցցուք ցարքայից արքայ . և
մտեալ 'ի ներքս դենշապուհ պատմէր յազ-
կերտի զմն զբանս և զխնդիրս երանելի ե-
րիցանցն : Ասէ թգրն . եթէ 'ի նց վս միաա
ինչ ոք յայտ չառնէ , և դատաւորաց ոք չէ
զհետ , թող երկիր պագցեն արեգական , և
պատուէել զկրակն՛ յանձն առցեն . և ընկա-
լեալ զպարգևս մեծամեծս 'ի մէնջ՝ արձա-
կեսցին յիւն իւրեանց . ապա թէ չհաւանեա-
ցին յանձն առնուլ զմեր հրաման , պատու-
հաս կրեսցեն խեղութբ , և երթեալ յասո-
րեստան՝ մշակութի արասցեն ընդ արքունի

մշակսն մինչև ցվախճան իւրեանց ։

Յայնժամ դենշապուհ տաքեաց զդահճա-պետն արքունի՝ առնել ժբ նմա և ժբ այլս յա-շակերտաց զհրամայեալսն ՚ի թգւորէն . և դահճապետն հանել զնմ կապեալսն ՚ի նիւ-շապուհ քաղաքէ , զատոյց ՚ի մի կողմն զխո-րէն և զաբրահամ , և ուրոյն ՚ի նոցանէ ե-հարց նախ զայլ աշակերտսն և զհինգ ասարի քրիստոնեայս՝ եթէ առնո՞ւն յանձն զհրաման թգւրին . և նք ոչ հաւանեցան երկիրպագա-նել արեգական , այլ ևս առաւել պնդեցան ՚ի հաւատս քի ։ Սոյ չարչարեաց զնս դա-նի . կտրեաց զնց ունչս և զականջս , և ետ տանել յատորեստան , զի կացցեն ՚ի մշակու-թի արքունի . և նք երթային մեծաւ զօրու-թք , իբրև այն թէ մեծ պարգևս գտեալ ՚ի թագաւորէն ։

Ապա կոչեաց դահճապետն զխորէն և զաբ-րահամ առանձինն յատեան , և ասէ ցնոսա . զի՞նչ անուանք են ձեր ։ Պատասխանի ետ միոն , և ասէ . առ ՚ի ծնողաց ինձ խորէն , և դմա աբրահամ . իսկ ըստ շնորհատուր կա-գիս ծառայք քի եմք , և աշակերտք երանե-լեացն՝ զոր սպանիք ։ Ասէ դահճապետն . իսկ արդ զի՞նչ գործ է ձեր , և կմ ո՞յր իսկ ածեալ է զձեզ այսր ։ Պնոնի ետ առ այս ոճն աբրահամ , և ասէ . զայդ ձեզ ՚ի վկայից մե-րոց արժան էր ուսանել , եթէ այնպիսի ա-րանց աշակերտք և ծառայք զհետ ընթա-նան . զի ոչ դուզնաքեայ ոք էին նք , այլ երիցունք և հայրապետք . ունէին և սուաց-

ուածս

ուհածս Հայրենիս ա̃ծ արժան բաւականին՝ ա̃ծ
նմին և սպասաւորս , եր՝ որ իբրև զմեզ , և
եր՝ որ լաւագոյն քան զմեզ ։ Որոց մնուցեալ
և ուսուցեալն եր զմեզ , ը̃ն նմ եմք եկեալ ․
քանզի և պատուէր իսկ ունիմք յա̃ծատուր
օրինացն մերոց սիրել զն̃ս իբրև զմ̃ր ծնօղս ,
և սպաս տանել նց̃ իբրև հօգևոր ն̃րանց ։
Ցասեաւ դահձապետն և ասէ ․ իբրև զան-
խորատ և զաներկիւղ ստամբակս խօսիս ․ մինչ
դեռ 'ի խաղաղութե̃ և յա̃ծի ձեռում եիք ,
բարիոք եր ․ այլ յորժամ քրէական յանցա-
նօք պարտաւոր եղեն նք̃ յիրս արքունի , և
մահապարտ գտան ա̃ծ գործոց իւրեանց , ձեզ
չեր արժան ամենևին մօտ երթալ առ նոսա ։
Ոչ տեսանէք 'ի մեծ կարաւանիս , յորժամ
ոք 'ի նախարարացն կամ 'ի սպասաւորացն 'ի
դլպահօջ արքունի լինիցի , ազգոյ հանդերձ
ազգանի , և զատեալ և որոշեալ՝ 'ի բացեայ
նստի միայնիկ ․ և ամենևին հուպ ոք ո՛չ իշ-
խէ երթալ առ նոսա ․ և դու այդպէս իբրև
զանյանցի աշակերտ՝ պարծելով խօսիս ։
Առ այս ետ պ̃խնի խորէն , և ասէ ․ ո՛չ ձեր
կարգդ անիրաւ է , և ո՛չ մերս ստու̃գ ։ Նա-
խարարն յանցաւոր առ թգ̃րն՝ ուստի զպար-
գևն գտեալ է , այնպէս պարտ եր նմա հպա-
տակ լինել , զի 'ի պատուոյն վ̃ր և այլ ևս
պարգևս մեծամեծս 'ի նմէ գտանէր ․ արդ
փոխանակ զի զայն ոչ արար , ձախողակի յետս
ընդդէմքն պատահեաց նմա ։ Եւ մեր վար-
դապետքն եթէ առ ա̃ծ յանցուցեալ էին , և
կամ առ թգ̃րն մեղուցեալ ինչ էին , նոյնօրի-
նակ

նակ և մեք առ նոսա առնէաք. ո՛չ յերկի մեզ երթայաք, և ո՛չ 'ի տուր Ե այլոր զհետ նոցա գնայաք: Արդ քզի առ երկոսին կողմանսն արդարութբ կեցեալ են, և դուք զուր յառա բապարտուց սպանիք զնա, մեք արդ եւս ա-ռաւել սպասաւորեմք Տեր ոսկերաց նց:

Ասէ ցնա դահճապետն. եւ յառաջագոյն իսկ ասացի՝ ոչ միում, նոյնպէս և միւսում 'ի ձէնջ, եթէ կարի ստամբակ ոմն ես դու. ահա յայտ եղև աւադիկ, եթէ յամ փառաս վիշապաց ձերոց խառն էք դուք: Աբրահամ ասէ. յո՞ր փառս: Դահճապետն ասէ. առաջին՝ 'ի մահ մոգուցն, և ապա՝ յայլսն ամ: Աբրահամ ասէ. այդ ոչ միայն 'ի մէնջ է, այլ ըստ կարգի և ձերոց օրինացդ. զի թագաւորք ձեզ տան հրաման գլխաւորացդ, և դուք 'ի ձեռն ձերոց սպասաւորացդ գործէք: Դահճապետն ասէ. 'ի Միհր մծ երդուեալ իմ, խստագոյն ես խօսիս քան զվրդպսն քո. յայտ է թէ փառասակարագոյնք ես էք դուք. արդ ո՛չ է հնար ձեզ ապրել 'ի մահուանէ, բայց եթէ երկիր պագանիցէք արեգական, և կատարիցէք զկամս օրինաց մերոց: Խոսրէն ասէ. ցայժմ իբրև զմարդ չարախօսէիր, և արդ իբրև զշուն անպիտան ընդվայր հաչես: Եթէ զայր արեգականն ականջք, դու տայիր նմա թշնամանս զնել. արդ նա բնութբ անզգայ է, և դու չարութբ անզգայագոյն ես քան զնա: Ե՞րբ տեսեր զմեզ պակասագոյն քան զհարսն մեր. մի՛ բանիւք զփորձ առնուլ կամիր զմեր, այլ՝ հանդէս արա քում

չա-

չարութեան , և մերում բարութեան . և ամա-
չեցեալ զտանի հայրն քո սատանայ՝ ոչ միայն
'ի մէնջ , որ կատարելագոյնքս եմք , այլև որ
կարի փոքրիկն թուի քեզ , նա դիցէ վերա
սատանիկս յոգիս և 'ի մարմինս քո ։

Զայս իբրև լուաւ զահճապետն , սրտմտեալ
բարկացաւ 'ի վ̄ր նց̄ . ետ քարշել չարագոյն
քան զառաջինսն . և այնչափ սաստիկ քար-
շեցին , մինչև բազմաց կարծիք եղեն՝ թէ մե-
ռան ։ Իսկ իբրև ժամք երեք 'ի վ̄ր անցին ,
դարձեալ խօսել սկսան երկոքեանն , և ա-
սեն . փոքր համարիմք զանարգանս զայս , և
առ ոչինչ զցաւս մարմնոյս՝ առ մեծ սէրն ն̄յ ,
որով կատարեցան հարքն մեր հոգևորք ։ Հան-
դա մի՛ դլար և մի՛ դադարեր , այլ զոր ինչ
առ նոսայն արարեր , զնոյն և առ մեզ կատա-
րեա՛ . եթէ չարագոյն թուին քեզ գործք նոյ ,
կրկին և զմե՛րս համարեսջիր . զի նոքա բա-
նիւք հրամայէին , և մեք գործովք զար-
դիւնան կատարէաք և կատարեմք ։

Յայնժամ և նա առաւել զայրագնեցաւ 'ի վ̄ր
նց̄ , և հրամայեաց զմահու գան հարկանել .
և առ մի մի 'ի նոցանէ փոխեցաւ վեց այր 'ի
դահճացն ։ Եւ մինչդեռ կիսամեռք յերկիր
անկեալ դնէին , հրամայեաց զերկոցունց ա-
կանջսն մօտ կտրել . և այնպէս բարեցին , որ̄
թէ չիցէ լեալ 'ի տեղւոջն ։ Զարթեանն որ̄
'ի քնոյ 'ի սաստիկ հարուածոցն . սկսան ա-
ղաչելով պաղատանօք մատուցանել , և ասեն .
աղաչեմք զքեզ քա՛ն զինուոր թագաւորին .
կա՛մ կատարեա՛ զմեզ իբրև զհարսն մեր մահ-

ուժամբ , և կմ̃ արամ զպատուհասդ ա̃յ օրինա-կի վերջնոյս : Ո՛վ ի ահա լսելիք մեր առող-ջացան զանախտաւորութի երկնաւոր . իսկ հոտոտելիքս զեռեալ ատոէն 'ի տեղւոջ կան-յանցս չարչարանաց . մի կիսապարգև առ-նել զմեզ յերկնից բարուէն : Արգեցեր ըղ-մարմինս մեր քարշելով , և զլսելիս մեր կըր-թելով . որքեմ և 'զռնգունս մեր հատա-նելով . քանզի որչափ տգեղս առնես զմեզ երկրաւորաւս , գեղեցկագոյնս առնես զմեզ երկնաւորաւն :

Սա պխնի դահճապետն հեղութի , և ասէ . եթէ և այլ յամեմ ես առ ձեզ մօտ կալով , կարծեմ եթէ և աշակերտէք զիս 'ի ձեր յա-մառութիդ : Ո՛վ ի ահա արդ և զխորհուրդս արքունի 'ի վեր հանեմ ձեզ . ցայդ վայր ե-ղև հրամանն պատուհասիդ ձերոյ . և 'ի վ̃ե րորին պատուհասի երթալ ձեզ յասպարէս-տան , և լինել ձեզ մշակ յարքունիս . զի որ 'ի ձեզ հայեսցի , մի 'ի դմին յամառութեան պնդեսցի ըստ հեմ հրամանաց թգրին : Ասեն ցնա երանելիքն . դու զմեր երկիրս կիսա-գործ թողեր . մեք յարքունի երկիրն կէս մարմնովք մերովք ոչ վաստակեմք : Նորա ղայս լուեալ դահճապետն , աղաչեաց զզին-ուորսն՝ որ տանելոց էին զնս , և ասէ . մինչ ասոր դուք առնէք գնացէք . և հասեալ յա-սպարէստան՝ ուր կամ իւրեանց է , շրջեցին : Այս են հայոց խոստովանողք կատարեալք ( ասէ որն եղիշէ ականատես ) , որ զխեղու-թիւն և զչարչարանս խնդութ ընկալան յան-

ձինս

ձինս իւրեանց. այլ մեզ զի վերակեցցին 'ի նոյն մահուանէն, սգով և տրտմութեամբ. երթային զերկայնաւոր ճանապարհին. ոչ ծանր թուէին նոցա կապանքն ոտիցն և ձեռացն իբրև զայն, թէ ընդէ՞ր ոչ եղաք արժանի հաւասարել ընդ քաջ նահատակսն :

Նաև իբրև տարան հասուցին զնոսա յերկիրն բարբարոսացն 'ի գաւառ մի, զոր շահուղ կոչ շարաւ անուանեն, թէպէտև էին յարքունի պատուհասի, սակայն յայտնի և գաղտ մեծապէս ընկալեալ եղեն 'ի քրիստոնէից բնակչաց աշխարհին. որք է առաջ ելին երանելեացն խնդութեամբ, և պատուէին զնա ոպ զնշխարս նահատակելոցն մրց. սակայն երանելիքն և յայնմ յոյժ տրտմագինք էին, իբրև այն թէ՝ սակաւ վաստակեցաք, և մեծապէս հանգչիմք :

Նաև իբրև հանապազ 'ի նմին զնդանի կային, տեսեալ զյօժարութիւն հաւատացելոց Տեառն՝ որք առատապէս բերէին նոցա զամ պէտս, յորդորեցին զնոսա հոգ տանել առաւել նախարարացն եղելոց 'ի կապանս 'ի նիւշապուհ դղեկի ասպար տէր. և զի ինքեանք յարձակ կային՝ էր յորդորելոյ բարեպաշտից յանձն առին և անձամբք տանել զտուրս նոցա յաշխարհատանէ մինչև յասպար տ. և այսպէս ամ յամէ ժողովէին էր իւրաքանչիւր կարի մարդկանն ոմն սակաւ և ոմն շատ, և տային յերանելիսն՝ տանել նոցա. և այսպէս յարքանեկուէ կային նոքա երիցունքն, մինչև տասն ամն լնու արքունի մշակութեան, միանգամայն և սպասա-

սաւորութեն նախարարաց կապելոյ ։

Այս վն զի յոյժ խստագոյնս պահէին 'ի Ջերմոջ Տրն, և անդադար էին 'ի Ճանապարհորդութեան է̅ նոյն շահուղ դաւառ և ընդ մեշտոջն և է̅ քաշկար և է̅ ամ ասորեստան և խուժաստան, սատրիկ տապով հարեալ 'ի խորշակէ մեռանէր Տրն խորէն անդէն յասորեստանի ․ և տանջեալ լինէր 'ի բնակչաց Տրն է̅ նք վկայն ։

Իսկ երանելին աբրահամ կայր 'ի նմին սաստկութեն այլ և ս ամս երկուս մինչև յերկոտասաներորդ ամն պատժուպացն, անվեհեր Թոշակատար լինելով առ նախարարս հայոց 'ի հաւատացելոց ասորեստանի Տր ։ Այս սկսան նախարարքն աղաչել զերանելին, զի որ վն նց զայնչափ աշխատութիւն յանձն առեալ էր երթեւեկելոյ է̅ երկայն Ճանապարհ, հաւանեսցի երթալ և յՏն հայոց, և մխիթարել զընտանիս իւրեանց ․ զի 'ի քեզ տեսցեն ամէն զքաջ նահատակսն՝ որք կատարեցան սրով, և զնք կապանս չարչարանաց մերոց ․ և քև օրհնեսցի Տն ամ ․ յորժամ կոխեսցեն անհնազանդ ոտք խստավանողին զերկիրս հայոց, և կենդանի մարտիրոսդ շրջեսցի 'ի մէջ ազգին, ամ Տէր կրկին լինի կենդանութի ։ Արդ 'ի տեսանելն զքեզ՝ և զմեր կապանս յիշեսցեն, և աղօթս առնելով խնդրեսցեն յայ, զի դարձդարձ լիցի մեզ անդրէն 'ի հայրենի երկիրն մեր ․ և այս ամ այսմիկ եղև ը̅ հաւատոց նց ։ Զի յորժամ մեծաւ Թախանձանօք ստիպեցին

ցին զերանելին աբրահամ, ածէին զխոստա-
վանողն 'ի հաւանութիւն • վն զի. ոչ էր երբեք
ստորութիւն սրբյն՝ բարւոյն Քղեմ դառնալ •
այլա երաշխաւորութբ հաւատացելոց՝ որք
զտունս իւրեանց և զարարս փոխանակ նորա
գրեցին յարքունիս, և յիւրեանց վր առին
զարքունի աշխատութին նր մինչև ցվախճան
նորին, արձակեցաւ երանելին, և եկն ե-
մուտ յԶն հայոց :

Խնդացան ելին ընդառաջ նր վաղվաղակի
մեծամեծք և փոքունք, արք և կանայք • ան-
կանէին և փարէին զոտիւք և զձեռօք սրբյն,
և ասէին • օրհնեալ տր ած 'ի բարձունս, որ
առաքեաց մեզ հրեշտակ յերկնից՝ բերել
մեզ աւետիս յարութե, զի լինիցիմք ժա-
ռանգք արքայութեն • քանզի և տեսն իսկ
երանելւոյն առանց ամ երկբայութե զկեր-
պարանս հրեշտակի ցուցեալ ծանուցանէր
ամ տեսողաց :

Բայց երանելի խոստովանողն թէպէտև այս-
պէս սիրով ընկալեալ եղև յամ Զէն, ընտ-
րեաց իւր տեղի մի զատ յամ բազմամբոխ
ժողովրդոց • և առաքինի եղբարբք երիւք
անցուցանէր զկեանս իւր մեծաւ ճգնութբ,
զոր եթէ կամիցի ոք 'ի կարգ. արկանել,
դժուարաւ կարասցէ ասել. զվարս առաքի-
նութե նր ( ասէ սուրբն եղիշէ ) • զի եթէ ըզ-
տքնութիւն ասիցես, իբրև զկանթեղ անշէջ
կայր զամ գիշերս • և եթէ զանկաւապխտու-
թիւն կերակրոցն կամիցիս ասել, համարեալ
եթէ զանկերակուր հրեշտակացն բերէր ըզ-
նմա.

նմանութեն. եթէ զհեզութեն ցածութեն կա-
միցիս ասել, ոչ զոք 'ի կենդանեաց կարիցես
գտանել նման նմա. և եթէ զանընչասիրու-
թիւն կամիցիս ասել, դարձեալ զոր օրինակ
չպարտի մեռեալն 'ի կարասէ, զնոյն օրինակ
ճշմարտութբ և առ երանելին իմացջի՛ր.
անյագական ձայնիւ համապազորդեալ էր
'ի պաշտաման, և անհատ աղօթիւք միշտ ը̄
ա̄յ 'ի բարձունս խօսէր։

Այլ վ̄ն այսպիսի հրեշտակային առաքինու-
թեն նր̄՝ ոչ հայեցեալ յականջատ գոլ ս̄ր̄յն
իբրև 'ի պակասութիւն, այլ առաւել որպ̄ս 'ի
կատարեալ նշանակ խոստովանողական ճգ-
նութեն, բռնադատեցին զնա, և ձեռնա-
դրեցին (ըստ գրելոյ փարպեցւոյն) յաստի-
ճան եպ̄սուե ծ̄ին բզնունեաց. որով և բա-
զում ուղղութեց ծ̄ին մարդկան լինէր ուսու-
ցիչ։ Ս̄յ և եղիշէ կրկնէ՛ անդրէն զգովու-
թիւ առն ա̄յ՝ 'ի վ̄ր բերէ. Աղ եղև նա ան-
համելոց, և խթան ը̄ոստուցիչ ա̄մ հեղգա-
ցելոց։ Պսրովեցաւ նովաւ ագահութեն, և
կարի յոյժ ամաչէաց նովաւ շուայտութիւն
որկրամոլութեն։ Ռողջութեն եղև նա ծ̄իս
հայոց. և բազում վիրաւորք 'ի ծածուկ նո-
վաւ գտին զառողջութեն։ Այլ եղև նա վ̄ւպ
կատարեալ՝ վ̄ւպաց իւրոց, և ո̄ք հայր խրա-
տու՝ հարանց իւրոց։ Այլ 'ի լուր ո̄ք համբա-
ւոյ նր̄ իմաստնացան տգէտք. և 'ի տեսիլ
մերձաւորութե նր̄ զգաստացան լկտիք։ Ընա-
կեալ էր ըստ մարմնոյ 'ի նեղ խցկան, և ահ
սրբութե նր̄ անկեալ էր զհեռաւորօք և զմեր-
ձա-

ճաւորօք ։ Զարհուրեցան դեւք , և փախեան 'ի նմանէ . իջին հրեշտակք , և բանակեալ ելին զնովաւ ։ Յոյնք երանի ետուն վ՟ն նորա Յիս Հայոց , և բազում բարբարոսք փութացան տեսանել զնա մարմնով ։ Սիրելի եղենա սիրելեաց ն՟յ , և զբազումս 'ի թշնամեաց ճշմարտութե՟ն եած 'ի հաւանութի՟ն ն՟ր սիրոյ ։ Սկիզբն արար առաքինութեան անդստին 'ի տղայ տիոց իւրոց , և նովին առաքինութ՟բ կատարեցաւ 'ի վախճան կենաց իւրոց ։ Ո՟պ ոչ խառնեցաւ 'ի կարգ ն՟ր ամուսնութե՟ն Յիս , այսպէս չեմուտ ի՟ մարմնաւոր պիտոյիւք ը՟մ ապականացու իւրաց Յիս ։ Եւ եթէ պարտ է պարզապէս ասել , ո՟պ փոխանակեաց ըզպէտս մարմնոյ ընդ պիտանացու հոգևոր իրաց , այսպէս փոխարկեալ եղև յերկրէ յերկինս 'ի բարւօք ծերութե՟ն . որում արժանի եղիցուք և մեք 'ի ք՟ն յ՟ն 'ի տ՟ն մեր . և նմա փառք յաւիտեանս . ամէն ։





# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Մեծ անարծաթ բժշկացն Կոզմայի և Դամիանոսի ։



ՄԵԾՈՒԹԻՒՆ ԱՄԵՆԱՅՆ եկեղեցիս քրիստոնէից յարեւելս և յարևմուտս անուն և պատիւ՛ նշանագործ վկայից անարծաթ բժշկաց 'ի սկզբանէ և այսր, և սքանչելիք նշ՟ յամ՟ տեղիս քարոզին . այլ այն է զարմանալին, զի ոչ մի, այլ երեք զոյգք եղբարց համօրուճեստից 'ի բժշկութե՟ Կոզմաս և Դամիանոս անուամբ աւանդին լինել յոմանց՝ . Թերևս զհամանմանս և զնախանձաւորս միմեանց առաքինութ՟ 'ի նոյն անուն կոչելով . եթէ չկայցէ և շփոթութի՟ ինչ պատմական ։ Ապա ժամ է լսել զպատմութիւնս իւրաքանչիւր, որպէս և զիարդ գտանեմք առ մեզ և առ յոյնս և առ հռովմայեցիս, սկսեալ 'ի նշէ՝ յորս ամենեքին միաբանին ։

## ա̃. Կոզմաս և Դամիանոս եղբարք արաբացիք.

Հ. Մարտ. 13, կմ. 14. և Նոյեմբ. 1: Յ. Յուլ. 17. և Նոյեմբ. 1: Լ. Սեպտ. 27: Բոլլանդեանք, անդ. և Սուրիոս, երես. 403 = 406:
Ճառընտ. Ս. ԱԼ = ԱԼԷ:

Ընդ ժամանակս թգ̃րութե̃ դիոկղետիանոսի և մաքսիմիանոսի՝ կին ումն էր 'ի քաղաքն էգէայ կիլիկեցւոց՝ երկիւղած յոյժ, թէոդոտէ անուն. յորմէ ծնան երկուորեակ եղբարք կոզմաս և դամիանոս՝ պատուպք ազգաթիւց. և սնեալ մանկայաշտ կարգօք և դաստիարութե̃՝ եղեն արուեստիւ բժիշկք, ուսեալք առաւել 'ի հոգւոյն սրբոյ. քանզի բժշկէին զա̃մ ախտս և զհիւանդութիւնս մարդկան և անասնոց անուամբ քնի. մինչև լուսաւորել զկոյրս, գնացուցանել զկաղս, բանալ զականջս խլից, և հալածել նաև զդևս. և ոչ առնուին յումեքէ ինչ՝ զհետ երթեալ պատուիրանին քնի, ձրի առէք, և ձրի տուք:

Իսկ 'ի միում նուագի 'ի բժշկել նց զկին ումն պալլադիա անուն յանբուժելի հիւանդութենէ, նա բազում թախանձանօք աղաչէր զմին դամիանոս ընդունել փոքր ինչ ուղերձ յընծայ, կմ երեք ձու հաւու. և 'ի չառնուլ նր յանձն՝ երդումն տուեալ յանունն այ ահաւոր՝ սաակէր չառնել անատեա զաղաչանս իւր. մինչև ամաչել նմա և ընդունել: Զայն իբրև լուաւ

որքն

Ո՞րն կողմաս, տրտմեցաւ յոյժ, և կամեցաւ որոշիլ յեղբօրէն ծմ իւրոց. մինչև պատուէր տայ՝ զի մի՛ Թաղեսցին երկոքին ՚ի միում գերեզմանի. այլ ՚ի նմին գիշերի երևեցաւ ծր ծառայի իւրում կողմայի, և ասէ. զի՞ ՚ի զուր խռովիս, զի եղբայր քո ո՛չ ՚ի վարձ էառ զընծայն, այլ ՚ի պատիժ անուան իմոյ՝ յոր երդուեաւ սուտօզն ։

Այս եղև յաւուրսն յայնոսիկ Հալածումն ՚ի վՐ քրիստոնէից ՚ը ծմ տեղիս. և ՚ի Նատիլ լիւսիայ դատաւորի յատեան յեգէա քաղաքի՝ մատնեցին զերկոսին եղբարս, Թէ անուամբն Քի փարատեն զծմ ցաւս. զոր տեսեալ բազմաց՝ ՚ի բաց կան ՚ի պաշտամանց ծոց, և զՀետ երԹան կրօնից նազովրացւոց։ Այս կոչեն դատաւորին զնմ զառաջեաւ՝ (ԺԵ Ճառընտրին, յառաջ ՚ի զեօԹն կաղանդացն դեկտեմբերի ամսոյ. այն է Նոյեմբ. ԻԵ) սաստիւք սպառնալեաց խօսէր ՚ի նմ յաղագս ամբաստանուԹեն եղելոյ զնոցանէ. այլ նախ ասացէք ինձ ասէ զԾԻ ձեր և զքաղաք, և զանուն, և զբախտ կմ զՃակատագիր ։

Պտսնի ետ անդրանիկ եղբայրն և ասէ. յԾէն արաբացւոց եմք մեք. ես կողմաս կոչիմ, և եղբայրս մեր՝ դամիանոս. այլ զի՞նչ բախտն իցէ՝ ո՛չ գիտեմք. վն զի քրիստոնեայք եմք, ուստի և ՚ի պատուհական ազգէ։ Դատաւորն ասէ. իցե՞ն ձեր և այլ եղբարք կմ ընկերք. կողմաս ասէ, այո՛ են. և անուանք նց՝ անԹիմոս, ղևոնդիոս, և եւպրեպիոս լսին. ետ բերել լիւսիաս և զնոսա. և ասէ ցՀնգեսին միան-

միանդամայն . զմտաւ ածել զօգուտն ձեր՝ մատիք և զոհեցէք ըմծոց մերոց , և թողէք անդր 'ի բաց զքոն ձեր . ապա թէ ոչ՝ տան.

Ջանօք ածեմ զձեզ 'ի հաւանութիւն :

Ո՛ւ այս պխնի եւտուն ՚ծը վկայքն միաբան . զտանջանս քո արհամարհեմք , և ո՛չ զան-գիտեմք . արա՛ զոր կամիս . զի մեք զկուռս խուլս և համրս՝ քարեղէնս և պղնձիս՝ ած կոչել ո՛չ կարեմք . և ո՛չ իսկ մարդիկ անուա-նեմք , այլ՝ դևս : Բարկացեալ դատաւորն՝ ետ կապել զձեռս և զոտս նց , և ուժգնա-պէս տանջել հարուածովք . իսկ երանելիքն սաղմոսէին , Տր ապաւէն մեր եղեր յազգէ յազգ , և որ 'ի կարգին . և ցլիւսիաս ասեն . եթէ իցեն քո և այլ խստագոյն տանջանք , փութա՛ ածել 'ի վը մեր . ոչ զի ծանիցես , թէ տանջանք քո ոչինչ կարեն սասանել մեզ : Յայնժամ հրամայն ետ դատաւորն ծովլըն-կէց առնել զնս շղթայակապ . և ահա հրեշ-տակ տն եկաց առ նս , և լուծեալ զշղթայս նց՝ եհան զնս 'ի ցամաք ողջանդամ : Օր լուեալ դատաւորին՝ զահի հարաւ . կոչեաց զնս , և ասէ . երդուեալ 'ի մեծ ըմծան , կա-խարդութն յաղթէք դուք . զի զտանջանօքն արհամարհեցիք , և զծովն յիմարեցուցիք , ա՛ղէ և ինձ ուսուցէք զայդ մոգութիւն , և ես աշակերտեցայց ձեզ : Պխնի եւտուն նըմն կոզ-մաս և դամիանոս , և ասեն . մեք կախար-դութիւն ոչ գիտեմք , զի քրիստոնեայ եմք , և անուանմբն քրի յոչինչ գրեմք զզօրութիւն կախարդաց . այլ դու թէ կամիս տեսանել

զզօրութիւն ք̅ի ա̅յ մերոյ , լե՛ր քրիստոնեայ
և ե՛կ զհետ մեր յանուն ք̅ի ։

Իսկ դատաւորն այսպէս առնելով զնա ասէ . յանուն Ապողոնի դ̅յն իմոյ եկեց զհետ ձեր . և յայն բան եհաս պատուհաս 'ի վ̅ր ն̅ր . զի երևեցան նմա երկու դևք , և ապտակէին և տանջէին զնա չարաչար . մինչև աղաղակել առ ն̅ր վկայսն . աղաչեմ զձեզ զօրականք ք̅ի , աղօ՛թս արարէք վ̅ս իմ առ ա̅ծ ձեր , զի մարթացայց ազատիլ 'ի ձեռաց դիւա՛ցս ։ Իսկ յաղօթել սրբոցն , և 'ի դնել ձեռս 'ի վ̅ր ն̅ր՝ դադարեաց պատուհասն , և աներևոյթ եղեն դևքն . իսկ անօրէնն լիւսիաս ասէ . տեսանէ՞ք , զիա՞րդ սրտմտեցան ա̅ծքն , վ̅ս զի խորհէի թողուլ զնոսա . յայնժամ ն̅ր վկայքն յանդիմանեցին զխստասրտութիւն ն̅ր և զմոլորութիւն սուտ ա̅ծոց . վ̅յ արկան 'ի բանտ զօրն զայն . ուր սաղմոսիւք և օրհնութ̅բ ոչ դադարէին 'ի փառաւորելոյ զա̅ծ ։ Իսկ 'ի վաղիւն անդր ետ բռնաւորն ածել զնո զառաջեաւ . և ասէ . խորհեցա՞յք յանձինս ձեր , եթէ՝ կայք յանմտութե ձերում ։ Սրբքն ասեն . լո՛ւր թշնամիդ ճշմարտութե . մեք քրիստոնեայք եմք , և մինչև ցվախճան պատերազմիմք վ̅ն ճշմարտութե . ո՛չ ուրանամք զճշմարիտն ա̅ծ բոլորից , և ո՛չ զարարածս կմ զմնոտի պատկերս կարող եմք ա̅ծ անուանել . այլ դու զո՛ր խորհուրդ և խորհեցար 'ի վ̅ր մեր՝ կատարեա՛ ։ Յայնժամ հրամանս ետ անօրէնն հնոց մեծ լուցանել , և արկանել զվկայսն 'ի հուր բորբոքեալ ։ Իսկ երանե-

լիքն

լիքն շրջէին 'ի մէջ հնոցին իբրև 'ի դրախտ փափկութե, և ցնծութբ սաղմոս ասէին. առ քեզ տր համբարձաք զաչս մեր, որ բնակեալդ ես 'ի յերկինս : Այլ յաղօթել անդ նցա՝ ել բոցն և այրեաց զբազումս 'ի հեթանոսաց. իսկ մնքն գտան ամենևին անարատ, զի և

մազ մի 'ի նոցանէ ոչ այրեցաւ :

Զայն տեսեալ դատաւորին՝ սքանչացաւ. այլ անդրէն 'ի միտս յիմարութե զառածանէր, և ասէր ցվկայսն. երդուեալ 'ի մեծ տծս, զարմացեալ եմ ըդ նորատեսիլ իրսդ. արդ ասացէք ինձ, մինչև յե՞րբ ստուերածս 'ի վր ածէք աչաց մերոց մոգական արուեստիւ, և ոչ զոհէք դից՝ որովք կեան տիեզերք : Սրբքն ասեն. մինչև ցե՞րբ ո՛վ ամպարիշտ՝ մոգութե ընծայես զզօրութի բարձրելոյն, և զկուռս խուլս՝ տծս անուանես. այլ մեք ոչ կարեմք ուրանալ զտծ մեր՝ որով կեամք,

շարժիմք և եմք :

Հրաման ետ բռնաւորն հանել զնս 'ի կախաղան քերանաց, և տանջել. և անդէն եկն եկաց առ նս հրեշտակ տյ, և պահէր զնոսա անվնաս. զի դահիճքն վաստակեցան, և նք կային զուարթ երեսօք : Ասէ լիւսիաս. ոչինչ օգտէ ձեզ կախարդութի ձեր, եթէ ոչ հնազանդեսջիք հրամանաց թգրին : Մկնի ետուն կոզմաս և դամիանոս, և ասեն. չեմք ինչ հնազանդելոց անօրէն հրամանաց թագաւորաց քոց. ունիմք մեք թգր յերկինս

զքս որդին այ :

Յայնժամ հրամայեաց դատաւորն 'ի խաչ

Հանել զկոզման և զդամբանոս, և քարկոծ
ածել. իսկ զանթիմոս և զզևօնդիոս և
զեւպրեպիոս 'ի բանտ տանել կապանօք:
Այլ արարին դահիճքն զհրամայեալսն. բայց
քարինքն անդրէն 'ի ձգօղսն դառնային. և
տեսեալ դատաւորին վիրաւորեալ զսպասա-
ւորս իւր` հրամայեաց չորից գնդաց զինուո-
րաց նետաձիգ լինել 'ի սր̄սն 'ի վ̄ր խաչին
յանդիման ամ̄ բազմութե̄. ետ բերել անդր
և զնահատակսն արկեալս 'ի բանտ, զի տե-
սօղ լինիցին պատուհասի նց̄:
Այլ 'ի ձգել զինուորաց զբազմութի̄ նետից`
ոչ մերձեցան 'ի նո̄ք վկայսն, այլ կարկամէր խո-
ցոտէին զժողով ամբոխին. և եղև ձիչ և
խռովութի̄ յոյժ: Ընդ որ խռովեալ դատաւո-
րին` հրաման ետ վաղվաղակի տանել զվկայսն
յայլ տեղի, և գլխատել. և նք̄ միաբան ա-
սէին զձանապարհայն. բարի՛ է խոստովան
լինել տն̄, և սաղմոս ասել անուա՛ն քում
բա՛րձրելդ. և հասեալք 'ի տեղի կատարմանն`
աղօթս արարին դարձեալ. և երբև ասացին
զամէնն, մատուցեալ դահճաց հատին ըզ-
գլուխս նոցա սրով. և այնպէս աւանդեցին
սր̄քն հնգեքին խաղաղութ̄ զհոգիս իւրեանց
առ ա̄ծ, ընկալեալք զպսակն յաղթութե̄:
Ասա աւարտէ ձառընտիրն մեր զպատմութի̄ն,
դնելով զկատարումն սր̄ց` որ օր քսանևհինգ
էր տրէ ամսոյ: Իսկ այլք յաւելուն, թէ
բարձին արք երկիւղածք զմարմինս նահա-
տակացն, և ամփոփեցին 'ի միում վայրի. որ
ըստ ոմանց ասի լինել մերձ յեՀմ, 'ի տեղին

կո

կոչեցեալ պոռեման կամ փոռեման : Սոր աւան-դութիւն է ռամկաց արաբացւոց, թէ 'ի վերայ եկեղ ուղտ մի՝ խօսեցաւ ոմն զէշն բազմամբո-խ մարդկայնոյն բարբառով, եւ եցոյց զտեղի գե-րեզմանի նոցա. ոչ թէ նշանագործ վկայքն կողմաս եւ դամիանոս բարերարք իցեն ոչ միայն մարդկան, այլեւ անասնոց :

Ոչ չէ ինչ անհաւանելի աղանչելիքն՝ որ-զկնի պատմի, թէ յետ ժամանակաց ումն 'ի չինականաց եկեալ 'ի հնձոց, եւ առեալ կերա-կուր՝ ննջեաց խոնջ մարմնով 'ի բացի բերա-նաբաց. եւ օձ մի սողեալ եմուտ ընդ բերանն նր. յորմէ 'ի տագնապ անհնարին անկեալ առն՝ ընթացաւ 'ի գերեզման սրբոցն, եւ սկսաւ ա-ղաղակել. ած սրբոցն կողմայի եւ դամիանոսի օգնեա ինձ. մինչեւ միւսանգամ ննջեաց, եւ ել օձն 'ի նմանէ, եւ ազատեցաւ :

Այլ եւս յաւուրս քրիստոնէութեն՝ յորժամ շի-նեցաւ վկայարան 'ի վր մարմնոյ սրբ վկայիցն, այր ումն մաղքոս անուն՝ որ ապաստանորէր տա-ճարի նր, եած անդր զկին իւր, եւ ասէ ցնա առաջի սրբոյն. ահա ես երթամ 'ի ճանապարհ հեռի 'ի տար. Ը, եւ յանձն առնեմ զքեզ այ եւ սրբ նր կողմայի եւ դամիանոսի. նիստ 'ի տան քում. եւ ցուցեալ նմա զնշան ինչ՝ ասէ. այս եղիցի քեզ նշան. յորժամ կամք լիցին այ, առաքեցից զայդ, եւ կոչեցից զքեզ :

Արդ յետ գնալոյ առնն՝ իբրեւ էանց ժամա-նակ ինչ, եկեալ դիւին 'ի կերպարանս ճա-նապարհորդի՝ ասէ ցկինն. ահա նշանն առն քո. նա առաքեաց զիս՝ զի տարայց զքեզ

## Ի. Կոզմաս և Դամիանոս հռովմայեցիք ։

Հ. Ե ՃԳ. յուլիս. 1 ։

Զերկրորդ անուանեալ հարազատ եղբարս՝ Կոզմաս և Դամիանոս կոչմամբ՝ հռովմայեցիս, յորոց և հայք նշանակեն յառաջին աւուր ամսեանն յուլիսի. ուր ունի բասիլեան յայսմաւուրք յանուանց այսպէս. * Նահատակութին սբցն անարծաթից Կոզմայի և Դամիանոսի՝ ՚ի հռովմ եղելոց ։ Կոզմաս և Դամիանոս՝ Քնի վկայքն՝ էին առ թագաւորութեն Կարինոսի. և բժիշկ գոլով արուեստիւ՝ շրջէին ըն ամ տեղիս, ամ հիւանդաց առողջութիւս պարգևելով, և վարձ բժշկութեն խնդրելով ՚ի բժշկելոցն՝ զ՚ի Քս հաւատս ։ Որդ կարծեցեալ կռապաշտիցն մեռելոց՝ որպէս կախարդական արուեստիւ զբժշկութիւն առնել, չարախօս եղեն առաջի Թագաւորին. և կալեալ ստիպէին ուրանալ զՔս. և ոչ հաւանեալ՝ ՚ի տանջանս պատրաստ լինէին. այլ զօրութեն Քնի զԹգն Կարինոս յետս դարձուցին ՚ի մոլորութէ. զի ՚ի թիւրիլ պարանոցի նր՝ բժշկեալ զնա, ոչ միայն զնա հանդերձեցին հաւատալ ՚ի Քս, այլև զամ ընտանիս նր ։ Ուստի ՚ի պատիւ մեծարանաց եղեալք՝ նախանձելի գտան վրդպին իւրեանց. և ՚ի լեառն ածեալք ՚ի նմանէ ՚ի քարշել զդոյսս՝ քարկոծեցան ։ Այս

պատ

պատմութիւն է, զոր առաւել պարզաբանելով
երկրորդէ և յայսմաւուրքն մեր ։

Է. Աղօթամս և դամիանոս՝ անհաւատոկք ։

Հ. և Յ. նոյեմբ. I ։

Օ երրորդ անուանեալ եղբարց անարծաթ-
բժշկաց չէ՛ք ինչ բան հաւաստի. զի
և ո՛չ ժամանակ նց կմ քաղաք յիշատակի ու-
րեք. այլ ոչ յայսմաւուրք յունաց՝ նոյնպէս
և հայոց, զառաջին վկայաբանութիւն՝ որ ըստ
Ճառընտրաց մերոց և հռովմայեցւոց՝ կրկնեն
և յաղագս սոցա նմ հանգամանօք. որպէս և
զսքանչելիսն նոյնպէս տատանօք երկրորդե-
լով. Թո՛ղ. զի ոչ զառասպել ուղտուն յեր-
կարեն, նոյնպէս և այլ յաւելուածս առնեն
այլ և այլ օրինակագիրք. յորոց մի է եգեալն
՚ի հայումս, զորով՝ բարուք առնէ՝ զի զանց
առնէ նր լինել. Եւ որում փոխաբերեալ է այսր
՚ի կարգէ նշանագործութեց սբյն Մինասայ, և
այն ՚ի համարոյ տխմարական աւանդութեց
ռամկաց ։



ԱԿՐ.Յ-

# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Ատուրոյ , կմ՛ Ադրուրուզտի :

Հ . փետր . 25 : Տն ԷԷւ . փետր . 22 : ի պատմագրաց հայոց :

ԵՐՋԱՆԻԿՆ 'Ի ՎԿԱՅՍ սրբ. մանաւկն Ատուրն՝ էր ազգաւ պարսիկ 'ի քուրմական բնաշպահոյ՝ որդի մոգպետի , յամս թագաւորութեան Խոսրովու որդւոյ կաւատայ , բնակեալ 'ի դուռին քաղաքն հայոց ընդ դենշապհոյ պարսիկ մարզպանի . և առաջին անուն նր 'ի հեթանոսութե մախոժ կմ մախոչ :

Նա եղև 'ի տեսանել մախոժայ զնահատակութի զգրիգորի ուժկի համազգւոյն իւրոյ, զի և նա 'ի մոգութէ էր դարձեալ, փառեցաւ 'ի սիրտ նր սէր առ քրիստոնէութի . և այնուհետև խղճէր ընդ դենն պարսկական՝ զմտաւ ածելով զպատրանս սնոտի կրակապաշտութե և արևապաշտութե . մինչ թէպէտ յապարանս մոգուց կայր , բայց երկմիտ էր 'ի հաւատոց նց : Նա յաւուր միում յորժամ մոգքն զոհս մատուցանէին ատրուշանին՝ ընդ կրակարանին, և մախոչ ընդ նմա , յանկարծակի բոցն բարձրացաւ ,

ցաւ, և օկսաւ այրել զապարանսն, և ոչ կարացին շիջուցանել. և եղև աղաղակ մեծ 'ի քաղաքին:

Զոր լուեալ Հազարապետն Հայոց՝ փութացաւ յեկեղեցին, էառ զքահանայսն կենսատու ս՟բ խաչիւն, և եկն յապարանսն. և անդէն վաղվաղակի 'ի զօրութենէն ք՟սի նշանաւ ս՟բ խաչին շիջաւ բոցն. և մոգքն շնորհակալ եղեն ն՟մ: Իսկ պատանին մախող 'ի բաց ընկեցեալ զգործի զոհիցն, և առեալ 'ի ձեռս զբուրվառն՝ երթայր առաջի ս՟բյ խաչին մինչև յեկեղեցին:

Եւ 'ի վաղիւն գնացեալ մոգուցն՝ չարախօսեցին զնա առ դենշապուհ մարզպանն, որ և միանգամայն վերակացու և դատաւոր քաղաքին դունայ, և ածեալ կացուցին զերիտասարդն յատենի. և նա համարձակութ՟ խոստովանեցաւ զք՟սի հաւատն, և այպանեաց զսնոտի պաշտամունս ն՟ց. Զի որ բարկացեալ դատաւորն՝ խուզեաց զհերսն և զմօրուսն, և զանեաց սաստիկ. և ետ արկանել զնա 'ի բանտ:

Եւ մնեալ մախող 'ի բանտն՝ եգիտ զոմն կրօնաւոր ներսէս անուն արգելեալ 'ի բանտին հանդերձ սահակաւ ընկերաւ իւրով՝ վ՟ն ազհամարհելոյ հրապարակաւ զդենն պարսից. Եւ մնաց ը՟ ամ յերկար յարգելանս. և ուսանէր 'ի նոցանէ օր ը՟ օրէ զհաւատս ք՟ի, և զսաղմոսն դաւթի. և սաղմոսէին 'ի միասին անդադար:

Եւ յետ երից ամաց (կ՟մ ո՟մ այլք ընթեռնուն,

Տ̃րն կողմաս, տրտմեցաւ յոյժ, և կամեցաւ որոշիլ յեղբօրէն տ̃մ իրոք. մինչև պատուէր տայ՝ զի մի՛ թաղեսցին երկոքին 'ի միում գերեզմանի. այլ 'ի նմին գիշերի երևեցաւ տ̃ր ծառային իւրում կողմայի, և ասէ. զի՞ 'ի զուր խռովիս, զի եղբայր քո ոչ 'ի վարձ էառ զընծայն, այլ 'ի պատիւ անուան իմոյ՝ յոր երդուեաւ տուօղն:

Իսկ եղև յաւուրսն յայնոսիկ հալածումն 'ի վ̃ր քրիստոնէից ը̃ տ̃մ տեղիս. և 'ի նստիլ լիւսիայ դատաւորի յատեան յեգէա քաղաքի՝ մատնեցին զերկոսին եղբարս, թէ անուամբն ք̃սի փառատեն զտ̃մ ցաւս. զոր տեսեալ բազմաց՝ 'ի բաց կան 'ի պաշտամանց ըծոց, և զհետ երթան կրօնից նազովրացւոց: Իսկ կոչեալ դատաւորին զնս̃ զառաջեաւ՝ (տ̃ ձառընտրին, յառաջ ք̃ զեօթն կաղանդացն դեկտեմբերի ամսոյ. այն է նոյեմբ. իէ) ստտիւք սպառնալեաց խօսէր ը̃ նս̃ յաղագս ամբաստանութեն եղելոյ զնոցանէ. այլ նախ ասացէք ինձ ասէ զա̃ ձեր և զքաղաք, և զանուն, և զբախտ կմ̃ զճակատագիր:

Պ̃խնի ետ անդրանիկ եղբայրն և ասէ. յա̃էն արաբացւոց եմք մեք. ես կոզմաս կոչիմ, և եղբայրս մեր՝ դամիանոս. այլ զի՞նչ բախտն իցէ՝ ոչ գիտեմք. վ̃ն զի քրիստոնեայք եմք, ուստի և 'ի պատուական ազգէ: Դատաւորն ասէ. ի՞ցէ՞ն ձեր և այլ եղբարք կմ̃ ընկերք. կոզմաս ասէ, այո՛ են. և անուանք նց՝ անթիմոս, ղեւոնդիոս, և եւպրեպիոս լսին. ես բերել լիւսիաս և զնոսա. և ասէ ցհնգեսին

միանգամայն . զմտաւ ածել զօգուտն ձեր՝
մատիք եւ զոհեցէք ա͞ծոց մերոց , եւ թողէք
անգըր 'ի բաց զքո͞ն ձեր . ապա թէ ոչ՝ տան.

Ջանսք ածեմ զձեզ 'ի հաւանութի՛ն :

Առ այս պխնի եւտուն ո͞ր վկայքն միաբան .
զտանջանս քո արհամարհեմք , եւ ոչ զան-
գիտեմք . արա զոր կամիս . զի մեք զկուռս
խուլս եւ համերս՝ քարեղէնս եւ պղնձիս՝ ա͞ծ
կոչել ոչ կարեմք . եւ ոչ իսկ մարդիկ անուա-
նեմք , այլ՝ դեւս : Բարկացեալ դատաւորն՝
ետ կապել զձեռս եւ զոտս ն͞ց , եւ ուժգնա-
պէս տանջել հարուածովք . իսկ երանելիքն
սաղմոսէին , Տ͞ր ապաւէն մեր եղեր յազգէ
յազգ , եւ որ 'ի կարգէն . եւ ցլիւսիա ասեն .
եթէ իցեն քո եւ այլ խստագոյն տանջանք ,
փութա ածել 'ի վ͞ր մեր . ո͞պ զի ծանիցես ,
թէ տանջանք քո ոչինչ կարեն սասանել մեզ :
Յայնժամ հրամանն ետ դատաւորն ծովըն-
կէց առնել զն͞ս շղթայակապ . եւ ահա հրեշ-
տակ ա͞ծն եկաց առ ն͞ս , եւ խզեալ զշղթայս
ն͞ց՝ եհան զն͞ս 'ի ցամաք ողջանդամ : Զոր
լուեալ դատաւորին՝ զահի հարաւ . կոչեաց
զն͞ս , եւ ասէ . երդուեալ 'ի մեծ ա͞ծան , կա-
խարդութ͞բ յաղթէք դուք . զի զտանջանօքն
արհամարհեցիք , եւ զծովն յիմարեցուցիք ,
ա՛րդ եւ ինձ ուսուցէք զայդ մոգութի՛ , եւ ես
աշակերտեցայց ձեզ : Պխնի եւտուն ո͞րն կոզ-
մաս եւ դամիանոս , եւ ասեն . մեք կախար-
դութ͞ի ոչ գիտեմք , զի քրիստոնեայ եմք ,
եւ անուամբն ք͞ի յոչինչ գրեմք զզօրութիւն
կախարդաց . այլ դու թէ կամիս տեսանել

զզօրութիւն քնի ա͞յ մերոյ, Տէր քրիստոնեայ
և ե՛կ զհետ մեր յանուն քնի :

Իսկ դատաւորն այսպն առնելով զնա ասէ. յանուն Ապողոնի ա͞յն իմոյ եկից զհետ ձեր. և յայն բան եհաս պատուհաս 'ի վ͞ր ն͞ր. զի երևեցան նմա երկու դևք, և ապտակէին և տանջէին զնա չարաչար. մինչև աղաղակել առ ն͞ր վկայսն. աղաչեմ զձեզ զօրակա՛նք քնի, աղօ՛թս արարէք վ͞ն իմ առ ա͞ծ ձեր, զի մարթասցայց ազատիլ 'ի ձեռաց դիւացս : Այս յաղօթել սրբ͞յն, և 'ի դնել ձեռս 'ի վ͞ր ն͞ր՝ դադարեաց պատուհասն, և աներևոյթ եղեն դևքն. իսկ անօրէնն լիւսիաս ասէ. տեսանէ՞ք, զիա՞րդ որսամտեցան ղծքն, վ͞ն զի խորհէի թողուլ զնոսա. յայնժամ ն͞ր վկայքն յանդիմանեցին զխստասրտութիւն ն͞ր և զմոլորութիւնս սուտ ղծոց. վ͞յ արկան 'ի բանտ զօրն զայն. ուր սաղմոսիւք և օրհնու- թ͞բ ոչ դադարէին 'ի փառաւորելոյ զա͞ծ :

Իսկ 'ի վաղիւն անդր ետ բռնաւորն ածել զնս զառաջեաւ. և ասէ. խորհեցարո՞ւք յանձինս ձեր, եթէ՝ կայք յանմտութե ձերում : Սրբքն ասեն. լո՛ւր թշնամիդ ճշմարտութե. մեք քրիստոնեայք եմք, և մինչև ցվախճան պատերազմիմք վ͞ն ճշմարտութե. ո՛չ ուրանամք զճշմարիտն ա͞ծ բոլորից, և ո՛չ զարարածս կմ զսնոտի պատկերս կարօղ եմք ա͞ծ անուանել. այլ դու զո՛ր խորհուրդ և խորհեցար 'ի վ͞ր մեր՝ կատարեա՛ : Յայնժամ հրամանն ետ անօրէնն հնոց մեծ լուցանել, և արկանել զվկայսն 'ի հուր բորբոքեալ : Իսկ երանե-
լիքն

ըլքն շրջէին 'ի մէջ հնոցին իբրև 'ի դրախտ փափկութե̃ , և ցնծութ̃ սաղմոս ասէին ․ առ քեզ տ̃ր համբարձաք զաչս մեր , որ բնակե̃լդ ես 'ի յերկինս ։ Այլ յաղօթել անդ նց̃՝ ել բոցն և այրեաց զբազումս 'ի հեթանոսաց ․ իսկ ն̃քն գտան ամենեքին անարատ , զի և մազ մի 'ի նոցանէ ոչ այրեցաւ ։

Զայն տեսեալ դատաւորին՝ սքանչացաւ ․ այլ անդրէն 'ի միտս յիմարութե̃ զառածանէր , և ասէր ցվկայսն ․ երդուեալ 'ի մեծ ած̃ս , զարմացեալ եմ ը̃ նորատեսիլ իրսդ ․ արդ ասացէք ինձ , մինչև յե՞րբ սատուերածս 'ի վ̃ր ածէք աչաց մերոց մոգական արուեստիւ , և ոչ զոհէք դից՝ որովք կեան տիեզերք ։ Մեքն ասեն ․ մինչև ցե՞րբ ո՛վ ամպարիշտ՝ մոլութե̃ ընծայես զզօրութի̃ բարձրելոյն , և զկուռս խուլս՝ ած̃ս անուանես ․ այլ մեք ոչ կարեմք ուրանալ զա̃ծ մեր՝ որով կեամք , շարժիմք և եմք ։

Հրաման ետ բռնաւորն հանել զն̃ս 'ի կախաղան քերանաց , և տանջել ․ և անդէն ելին եկաց առ նս̃ հրեշտակ տ̃յ , և պահէր զնոսա անվնաս ․ զի դահիճքն վաստակեցան , և նք̃ կային զուարթ երեսօք ։ Ասէ լիւսիաս ․ ոչինչ օգտէ ձեզ կախարդութի̃ ձեր , եթէ ոչ հնազանդեսջիք հրամանաց թգ̃րին ։ Պ̃տնի ետուն կոզմաս և դամիանոս , և ասեն ․ չեմք ինչ հնազանդելոց անօրէն հրամանաց թագաւորաց քոց ․ ունիմք մեք թգ̃ր յերկինս զք̃ս որդին ա̃յ ։

Յայնժամ հրամայեաց դատաւորն 'ի խաչ

հանել զկոզման և զդամիանոս, և քարկոծ առնել. իսկ զանԹիմոս և զլևոնդիոս և զեւպրեպիոս 'ի բանտ տանել կապանօք։ Այս արուրին դահիճքն զհրամայեղոն. բայց քարինքն անդրէն 'ի ձգօղսն դառնային. և տեսեալ դատաւորին վիրաւորեալ զապաշաւորս իւր՝ հրամայեաց չորից գնդաց զինուորաց նետաձիգ լինել 'ի սրբոցն 'ի վր խաչին յանդիման մծ բազմութե. ետ բերել անդր և զնահատակսն արկեալս 'ի բանտ, զի տեսող լինիցին պատուհասի նց։

Այս 'ի ձգել զինաւորաց զբազմութի նետից՝ ոչ մերձեցան 'ի նոր վկայսն, այլ կարեվէր խոցոտէին զժողովս ամբոխին. և եղև ձիչ և խռովութի յոյժ։ Ընդ որ խռովեալ դատաւորին՝ հրամանն ետ վաղվաղակի տանել զվկայսն յայլ տեղի, և գլխատել. և նոքա միաբան ասէին զձայնապարհայն. բարի է խոստովան լինել տն, և սաղմոս ասել անուան քում բարձրեալ. և հասեալք 'ի տեղի կատարմանն՝ աղօթս արարին դարձեալ. և իբրև ասացին զամէնն, մատուցեալ դահճաց հատին ըզգլուխս նոցա սրով. և այնպէս աւանդեցին սրբքն հնգեքին խաղաղութ զհոգիս իւրեանց առ Տծ, ընկալեալք զպարգևսն յաղԹութե։ Ե.սա աւարտէ ճառընտիրն մեր զպատմութիւն, դնելով զկատարումն սբց՝ որ օր քսանևհինգ էր տրէ ամսոյ։ Իսկ այլք յաւելուն, Թէ բարձին արք երկիւղածք զմարմինս նահատակացն, և ամփոփեցին 'ի միում վայրի. որ ըստ ոմանց ասի լինել մերձ յէջմ, 'ի տեղին

կոչեցեալ պոռնեման կին փռնեման : Այլ աւան-դութիւն է ռամկաց արարացւոց, թէ ՚ի վերայ եկեալ ուղտ մի՝ խօսեցաւ ոպ զէշն բաղաամու մարդկային բարբառով, և եցոյց զտեղի գե-րեզմանի նոցա. ոպ թէ նշանագործ վկայքն կոզմաս և դամիանոս բարեացապարտ իցեն ոչ միայն մարդկան, այլև անասնոց :

Այլ չէ՛ ինչ անհաւանելի սքանչելիքն՝ որ զկնի պատմի, թէ յետ ժամանակաց ումն ՚ի շինականաց եկեալ ՚ի հնձոց, և առեալ կերա-կուր՝ ննջեաց խոնջ մարմնով ՚ի բացի բերա-նաբաց. և օձ մի սողեալ եմուտ ընդ բերանն նր. յորմէ ՚ի տագնապ անհնարին անկեալ առն՝ ընթացաւ ՚ի գերեզման սրբցն, և սկսաւ ա-ղաղակել. ած սրբցն կոզմայի և դամիանոսի օգնեա՛ ինձ. մինչև միւսանգամ ննջեաց, և ել օձն ՚ի նմանէ, և ազատեցաւ :

Նա և եղև յաւուրս քրիստոնէութե՝ յորժամ շի-նեցաւ վկայարան ՚ի վր մարմնոյ սրբ վկայիցն, այր ումն մաղքոս անուն՝ որ սպասաւորէր տա-ճարի նց, էած անդր զկին իւր, և ասէ ցնա առաջի սրբյն. ահա ես երթամ ՚ի ճանապարհ հեռի ՚ի տարս Ե, և յանձն առնեմ զքեզ այ և սրբց նր կոզմայի և դամիանոսի. նիստ ՚ի տան քում. և ցուցեալ նմա զնշան ինչ՝ ասէ. այս եղիցի քեզ նշան. յորժամ կամք լիցին այ, առաքեցից զայդ, և կոչեցից զքեզ :

Որդ յետ գնալոյ առն՝ իբրև էանց ժամա-նակ ինչ, եկեալ դիւն ՚ի կերպարանս ճա-նապարհորդի՝ ասէ ցկինն. ահա նշան առն քո. նա առաքեաց զիս՝ զի տարայց զքեզ

յայն ինչ քաղաք, ուր է նա։ Ուանեալ կինն զնշանն. այլ կասկածեալ յօտարականէ անտի՝ խնդրեաց 'ի նմէ երդումն յանուն սրբոյն կողմայի և դամիանոսի 'ի տաճարի նց, զի մի արասցէ ըն նա ինչ չար զճանապարհայն. և զեն երդումս. և առեալ տանէր զնա զբրատու. և իբրև անցանէին ըն տեղի մի դժուարին, դրդուեցոյց զնա չարն, և կամէր զահավէժ առնել և կորուսանել։ Յայնժամ աղաղակեաց կինն յերկինս 'ի վեր, ով կողմաս և դամիանոս օգնեցէք. և ահա նոյնժամայն երևեցան երագահաս վկայքն ոց հեծեալք հանդերձ բազմութբ սպիտակազգեցից. և ազատեալ զկինն՝ խարդաւանեցին զչարն ընդ վիհն, մինչև կորնչիլ և անհետ լինել. և լցալ գիրն, եթէ զ'աւքն՝ զոր փորեաց և պեղեաց, 'ի նոյն անկցի 'ի խորխորատ՝ զոր և գործեաց։ Իսկ կալեալ սրբոյն զձեռանէ կնոջն՝ ածին կացուցին զնա 'ի տան իւրում, և ասեն ցնա. մեք եմք կողմաս և դամիանոս, որոց յանձն արարեր զքեզ, և երդմամբ չափ հաւատացեր 'ի մեզ. վսյ փութացաք 'ի թիկունս հասանել քեզ։

Բազում և այլ սքանչելիս՝ զորս յերկար լինի 'ի համար արկանել (ասէ վկայաբանն), կատարէ ած 'ի նմին տեղւոջ մինչև ցայսօր 'ի փառս և 'ի գովեստ անուան իւրոյ փառաւորելոյ։ Այս վկայաբանութի է համդիսացեալ, զոր ոչ գտանեմք 'ի ճառընտրի մերում, նոյնպէս ճոխագոյն յառաջ բերէ սուրիոս 'ի հին մատենից հռովմայեցւոց. և զնոյն քաղեն նաև

նաև յայսմաւուրք ոչ լատինացւոց , նոյնպէս
և յունաց և հայոց . միայն 'ի հայումն ը ճառ-
ընտրին և ըստ յայսմաւուրաց՝ փոխանակ դա-
տաւորին եգեպտացւոց՝ դնի եգիպտացւոց :
Այլ 'ի նոյն փառաւոր և սքանչելագործ վկայս
հայր գրեալն 'ի հին մատենագրէ 'ի սմին
գրիգորէ եմպէ տուրոնեան՝ յաղագս փառաց
վկայից (Գիր. Ա. Գլ. 98), բանիւքս այսոքիւք .
* Աշկուճորեակ եղբարքն կոզմաս և դամիա-
նոս՝ արուեստիւ բժիշկք , յետ քրիստոնեայ
լինելոյ իւրեանց , 'ի ձեռն արդեանց առա-
քինութեց և զօրութ. աղօթից և եթ՝ փարատէին
զհիւանդութիւնս ախտացելոց անձանց . Որ և
ազգի ազգի չարչարանօք նահատակեալք՝ ե-
լին 'ի դասս երկնաւորաց , բազում սքանչե-
լիս ցուցանելով բնակչաց երկրի . զի թէ ոք
կատարեալ հաւատով յաղօթս կայցէ առ գե-
րեզմանս նց , իսկ և իսկ առանայ զառող-
ջութի . Պատմեն ևս յոլովագոյնք , թէ սք ե-
րևեին ախտացելոց 'ի տեսլեան , և ցուցանէին՝
զոր ինչ արժան է առնել . և ը առնելն զայն՝
ողջամբք դառնան : Յորոց զբազումս լուեալ
է իմ . զորս յերկար համարեցայ մի առ մի
նշանակել , շատ համարել զոր ասացի , թէ
ամենեքեան՝ որք հաւատով աղօթեցին. , ա-
ռողջութ. դարձան || :

